ուրիշ երկիրներու գործերուն, ուղղակի կամ անուղղակի :

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ Անգլիա եւ Մ. Նահանգները ուշադրութեամբ կը հետեւին Եուկոսլաւիոյ շրջանային պաշտպանութեան ծրագրին: Թիթոյի յայտարարութեանց մէջ ամէնէն նշանակալից պարագան այն է որ, Եուկոսլաւիոյ դիկտատորը տրամադիր է այդպիսի դաշինք մը կնքելու խաղաղութեան առեն. մինչդեռ, նախապէս կ'ըսէր թէ արեւմտեան պետութեանց պիտի միանայ, երբ յարձակում կատարուի Խ. Միութեան կամ իր արբանեակներուն կողմէ: Զինակցութիւն մը Յունաստանի եւ Թուրքիոյ հետ՝ անշուշտ ապառնալիք պիտի համարուի Խ. Միութեան կողմէ, իր արբանեակներուն համար, եւ Կրեմլին կրնայ ազդարարութիւններ ուղղել Եուկոսլաւիոյ: Ուրեմն Թիթօ այդ պարագան ալ աչքառած է, երբ աւելի բաց կը խօսի այսօր:

## Բանաձեւ մը Եգիպտոսի դէմ

Ապահովութեան Խորհուրդը Սեպտ. 2ին գերոյի դէմ 8 ձայնով եւ երեք ձեռնպահութեամբ քուէարկեց բանաձեւ մը, որ կը մեղադրէ Եգիպտոսը՝ Սուէզի ջրանցքին փակման համար եւ կը պահանջէ անմիջապէս վերցնել այն սեղմումները որոնք հաստատուած են Իսրայէլ գացող նաւերուն վրայ:

Հեռագիրը կ'ըսէ թէ բանաձեւը քուէարկուեցաւ քանի մը վայրկեանէն: Կը սպասուէր որ խորհրդային պատուիրակը վեթօ դնէ, բայց ան լուռ մնաց, մեծ զարմանք պատճառելով: Բանաձեւը կ'ըսէ թէ Եգիպտոսի կողմէ հաստատուած արգելքները չեն համապատասխաներ զինադադարի պայմանագիրներուն եւ թէ կատարուած խուզարկութիւնները եւ բռնագրաւումները կը վնասեն այն ազգերուն որոնք որեւէ կապ չեն ունեցած Պաղեստինի դէպքերուն հետ:

Բանաձեւին քուէարկութենէն վերջ, Իսրայէլի պատուիրակը շնորհակալութիւն յայտնեց Ապահովութեան խորհուրդին:

Խորհրդային պատուիրակին դիրքը ոչ միայն զարմանք, այլեւ մեծ յուսախաբութիւն պատճառեց Եգիպտոսի մէջ, ուր ժողովուրդը լուրի կը սպասէր անհամբեր, ձեռքէ ձեռք խլելով օրուան թերթերը: Իպրահիմ Ֆարադ փաշա, գիւղական գործերու նախարարը, յայտարարեց թէ Ապահովութեան Խորհուրդին որոշումը արդարութեան ժխտումն է եւ անգամ մը եւս կ'ապացուցանէ թէ «մեծ պետութիւնները դաւեր կը սարքեն, իրենց հրամանները պարտադրելու համար փոքր ազգերուն: Եգիպտոս գիտէ իր պարտականութիւնը եւ զայն կը կատարէ ի շահ բոլոր արաբական երկիրներուն, որպէսզի զինամթերք չհասցնեն Իսրայէլի»:

Եգիպտոսի Նախարարական խորհուրդի նիստէն վերջ, արտաքին նախարարը յայտարարեց թէ Ապահովութեան Խորհուրդը ուրիշ որոշումներ ունի եւ կրնայ անոնց գործադրութեան ձեռնարկել, փոխանակ Եգիպտոսէն պահանջելու իր անարդար որոշման գործադրութիւնը:

✕ Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, Ապահովութեան Խորհուրդին Թուրք պատուիրակը, որ վերջերս այնպէս կը ցուցնէր թէ Եգիպտոսի հետ է, վերջին պահուն միացաւ արեւմտեան պետութեանց, քուէարկելով բանաձեւը:

Կ'ըսուի թէ Եգիպտոս Լա Հէյի Գերագոյն Ատեանին պիտի դիմէ, դիտել տալով թէ Անգլիա, Ֆրանսա եւ Մ. Նահանգները քուէարկելով բանաձեւը, գործած կ'ըլլան թէ իբրեւ ամբաստանող եւ թէ իբրեւ դատաւոր:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՏՈՔԹ. ՎՈՐՈՆՈՎ, երիտասարդացման չիճուկին հեղինակը, մեռաւ Լոզանի մէջ: Կը յուսար ապրիլ մինչեւ 140 տարի: Ռուս էր եւ իր փորձերը սկսաւ 1919ին: Ահագին հարստութիւն դիզած էր եւ կը պարծենար թէ հազարաւորներ երիտասարդացուցած է, շնորհիւ իր հնարած չիճուկին: Ատեն մը հարիւրէ աւելի կապիկներ կը պահէր, իր փորձերուն համար:

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ կառադութեան դէպք մը պատահած ըլլալով, քաղաքապետութիւնը որոշեց որ շուները քաղաքէն դուրս չհանուին մինչեւ երկու ամիս, բացի որսորդներու եւ հովիւներու շուներէն:

ԵՒՐՈՊԱՅԻ ԱՇՈՒԽԸ 10 — 12 միլիոն թոն պակաս պիտի գայ 1952ին, ինչպէս հաստատեց ՄԱԿի Տնտեսական Յանձնաժողովը: Ստիպողական կոչ մը ուղղուեցաւ արտածող երկիրներուն, որպէսզի աւելցնեն իրենց արտածումները:

ԱՆԳԼԻՈՅ Թագաւորը նորէն հիւանդացած ըլլալով, երկու մասնագէտներ դրկուեցան:

ԳՈԼՍՈՅ թերթերը կը գրեն թէ ձերբակալուեցան խումբ մը լրտեսներ որոնք Խ. Միութեան յանձնած էին Տիարպաքըրի օդակայանին յատակագիծը: Բոլորն ալ պիտի դատուին զինուորական ատեանին առջեւ:

## ՅԱՌԱՋի տարածման համար

Առնուվիլէն ընկեր Արփիար Մարտիրոսեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Պ. Ռուբէն Փափազեանի, Մարսէյլ:



ՆՈՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

# ՊԱՐՏԻԶԱԿԻ ԳՐՉԱՆԿԱՐՆԵՐԸ

Պատ. Ա. Ա. Պետիկեանի 720 էջնոց մէկ շքեղ հատորը կը կենդանացնէ ամէնուն սիրելի այս պատմական հայ գիւղը եւ պէտք է բարձի գերբն ըլլայ բոլոր Պարտիզակցիներուն եւ դրացիներուն:

Գինն է 1500 ֆրանք եւ կը գտնուի միայն Տէր Յակոբեան տպարանը, 17, rue Damesme, Paris (13):



Le Gérant : A. NERCESSIAN

Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13e).

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԷՍԻՆ.— Ց. Կ. Խ. Տէսինի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ 8 սեպտ. շաբաթ կէսօրէ վերջ ժամը 5ին, ընկերուհի Տիկ. Ասատուրեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:

ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Տէսինի Ց. Կ. Խ. մասնաճիւղին, Café Morgui հովասուն վայրը, կիրակի, 9 սեպտեմբեր:

Մանրամասնութիւնները տեղին վրայ:



Դ. ՎԱՐՈՒԺԱՆԻ ԳՈՐԾԵՐԷՆ սակաւաթիւ օրինակներ կան Յառաջի խմբագրատունը.— 3 օրինակ միայն Հեթանոս Երգեր, գինը 2000 ֆրանք, 6 օրինակ Հացին Երգը գինը 500 ֆր.: 4 օրինակ Concubine (Հարճը) գինը 250 ֆր.: 2 օրինակ Արեան Ցեղթանակ (ձայնագրուած) գինը 250 ֆր.:

Դիմել վարչութեան:

ԴԵՐՁԱԿԻ ԱՇԱԿԵՐՏ ՄԸ ԿԸ ՈՒԶՈՒԻ

14 — 15 տարեկան, մանչ կամ աղջիկ, գործատէրը պայմանագրութիւն պիտի կնքէ եւ յայտարարէ:

Դիմել Mr. Germain, 12 rue Jules Guesde, L'Haye les Roses (S):

ՀՐԱՊԱՐԱԿԱՒ կը յայտարարեմ թէ 1951 Օգոստոս 1էն, Իսիի մէջ, Rue de la Défense ունեցած սրճարանս, Café des Sports, ծերանի յանձնած ըլլալով, ամէն անոնք որ առկախ գործեր ունին ինծի հետ, կրնան դիմել 85 Ave. de la Paix Issy:

ՍԱՐԳԻՍ ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

ցութեան դէմ: Մենք թոյլ պիտի չտանք որ ներկայ պայքարը մեզ շեղեցնէ խաղաղութեան ջանքերէն ։ Մենք կը հաւատանք ազատութեան եւ միջազգային արդարութեան վրայ հիմնուած խաղաղութեան: Մենք գիտենք որ ազատ եւ անկախ ժողովուրդները աւելի կորով եւ տոկուն ուժ ունին քան այն ժողովուրդները որ կը գտնուին օտար տիրապետութեան տակ»:

╳ Նախագահը նոյն օրը հետեւեալ յայտարարութիւնը կ'ընէր կուսակցական ժողովի մը մէջ,— « Նոր զէնքեր կը շինուին մեր երկրին մէջ Ձեզ խօսիր այն զէնքի մասին որմէ կը վախնանք ամէնէն աւելի: Կը յուսամ թէ երբեք պէտք պիտի չունենանք զանոնք գործածելու »:

╳ Երէկ անհամբեր կը սպասուէր Գ. Կրոմիքոյի յայտարարութեան կամ նոր ծրագրի մը: Ժողովին օրակարգը եւ կանոնագիրը այնպէս մը դասաւորուած են, որ կարելի չէ երկար ճառեր խօսիլ: Ժողովականները կրնան միայն տեսակէտներ յայտնել ։

╳ Ժողովը տեղի կ'ունենայ ճիշդ Սան Ֆրանչիսկոյի օփերային մէջ, ճիշդ այն սրահը ուր ստորագրուեցաւ Միացեալ Ազգերու սահմանադրութիւնը ։ Միայն 300 տոմսեր սահմանուած էին հանրութեան: Հարիւրաւորներ պոչ կապած էին տոմսերու բաշխումէն ութ ժամ առաջ ։

╳ Ինը ժամ տարբերութիւն կայ Սան Ֆրանչիսկոյի եւ Փարիզի միջեւ. վեց ժամ՝ Նիւ Եորքի եւ Փարիզի միջեւ: Եթէ ժամը 18.45 է Սան Ֆրանչիսկոյի մէջ — ժողովին բացման ժամը — տեղական ժամը 3.45 է Փարիզի մէջ: Այնպէս որ, Ճափոնի հաշտութեան դաշնագրի ժողովին բացումը, 4 Սեպտ. 1951, արեւմտեան Եւրոպայի պատմութեան դասագիրքերուն մէջ պիտի արձանագրուի 1951 Սեպտ. 5:

## Իրանեան քարիւղի խնդիրը

Թէհրանէն կը հեռագրեն թէ կառավարութիւնը կը խորհի վերաբանալ Աբատանի քարիւղի մեծ զտարանը, օտար մասնագէտներ ճարելով ։ Մինչոյն ատեն պիտի համաձայնի Խ. Միութեան արբանեակ երկիրներուն հետ, քարիւղ ծախելու համար ։

Այս լուրը հաղորդեց Իրանի փոխ - վարչապետը, Հուսէյն Ֆաթեմի, բայց միեւնոյն ատեն յայտնեց թէ կառավարութիւնը տակաւին պատրաստ է վերսկսելու բանակցութիւնները Անգլիոյ հետ ։

Տոքթ. Մոսատեղ, վարչապետը, երէկ շատ կարեւոր յայտարարութիւններ պիտի ընէր ծերակոյտին գռնփակ նիստին մէջ, պարզելով կացութիւնը: Այս առթիւ պիտի բացատրէր թէ ինչ ըրած է կառավարութիւնը, բանակցութեանց խզումէն ի վեր եւ պիտի ներկայացնէր Իրանի նոր առաջարկները, լուսաբանելով կարգ մը կէտեր ։ Իրազեկներ կը կարծեն թէ այդ լուսաբանութիւնները պիտի օգնեն, նոր բանակցութեանց ճամբան հարթելու համար ։

Փոխ - վարչապետը յայտարարեց թէ քանի մը հարիւր մասնագէտներու պէտք ունին, Աբատանի զտարանը բանեցնելու համար: «Եթէ Անգլիացիները յամառին, այդ մասնագէտները պիտի ճարենք հազար թեկնածուներու մէջէն որոնք արդէն դիմում կատարած են մեզի: Այդ մասնագէտներուն միջոցաւ պիտի վերսկսինք արտադրութիւնը նախ փոքր քանակութեամբ, ապա աստիճանաբար աւելցնելով: Արտադրուած քարիւղը պիտի ծախուի պատրաստ յաճախորդներու: Չեխոսլովաքիա արդէն պահանջած է 500.000 թոն, անմիջապէս յանձնելի եւ 2.500.000 թոն ալ յետագային: Լեհաստան կը պահանջէ 700.000 թոն ։

---

ՄԱՐՈՔԻ մէջ հաստատուած խարիսխները պիտի գործածուին միայն Ֆրանսական եւ ամերիկեան օդանաւերու կողմէ ։

ԻՏԱԼԻՈՅ վարչապետը, որ միեւնոյն ատեն արտաքին գործերու նախարարն է, երէկ ճամբայ ելաւ դէպի Մ. Նահանգները: Մանաւորապէս պիտի ջանայ ապահովել հաշտութեան դաշնագրին վերաքննութիւնը, տնտեսական օգնութիւն ստանալ, լուծել Թրիէսթէի խնդիրը եւն.:

707 ՀՈԳԻ ՄԵՌԱՆ, ինքնաշարժներու տակ մնալով խեղդուելով կամ ուրիշ արկածներու հանդիպելով, Մ. Նահանգներու աշխատանքի շաբթուան տօներուն առթիւ:

ՄԻՍԻ ԳԻՆԸ իջեցնելու համար, արձակուրդի գացած բոլոր նահանգապետները ետ կանչուեցան: Մսավաճառները անգործադրելի կը գտնեն կառավարութեան որոշումները, ըսելով թէ դուռ պիտի բացուի սեւ շուկայի ։

ԴՊՐՈՑԱԿԱՆ ՕՐԷՆՔԻ քուէարկութեան առթիւ, համայնավարները եւ ընկերվարականները պարսաւանքի քուէ առաջարկեցին վարչապետին դէմ, բայց մերժուեցաւ:

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Արշալոյս Մանուկեան (140 rue Haxo, Paris (19), կը յայտարարէ թէ իր ողբացեալ ամուսինին

ԿՂԵՄԷՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, 9 Սեպտեմբեր, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, (15 rue Jean Goujon):

Հանգուցեալին յիշատակը յարգող բոլոր ազգականները, բարեկամ ու ծանօթները կը հրաւիրուին ներկայ ըլլալ այս հոգեհանգստեան պաշտօնին ։

---

ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

ԱՐՏԱՒԱԶԴ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

**Համայնագիտական եւ Հայագիտական**

ՍՈՒՐԲ ԳՐՈՑ

Ընդարձակ եւ պատկերազարդ բառարանի
Ա. հատորը (Ա.— Ասորիք)

Դատաստաններ

« ... Ու դատելով գործին լրջութիւնը հրատարակուած սկզբնական պրակներէն, մտքիս մէջ տարակոյս չի ձգեր՝ թէ երբ ամբողջանայ պիտի ըլլայ կոթողային, փառքի մնայուն պսակ մըն ալ աւելցնելով Ձեր ճակտին »:

Նիւ Եորք — Վեր. Ա. Ա. ՊԵՏԻԿԵԱՆ

╳ « ... Արդարեւ շատ հսկայ գործ է, մեծ աշխատութիւն կը պահանջէ, բայց գնահատելի եւ անմոռանալի ծառայութիւն մը պիտի ըլլայ ան մեր եկեղեցական գրականութեան համար, վասն զի չունինք Ս. Գրոց ընդարձակ համայնագիտարան մը, հայագիտական բաժինով մը ճոխացած»:

Ֆրէզնօ — Գ. Ա. ՍԱՐԱՖԵԱՆ

Գին 12 տոլար

Ստանալու համար դիմել հեղինակին՝
Mgr. Artavazd Surméyan, 15, Rue Jean Goujon, Paris.



ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՏԷՍԻՆ.— Ֆ. Կ. Խ. Տէսինի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ 8 սեպտ. շաբաթ կէսօրէ վերջ ժամը 5ին, ընկերուհի Տիկ. Աստուրեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարուժան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս հինգշաբթի իրիկուն ժամը 20.30ին, ընկեր Ճապուրեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Դաշնակցութեան Օրը Վալանսի մէջ Հոկտ. 13ին, Salle des Fêtes-ի մէջ ։

ԱՂԲԻՒՐ ՍԵՐՈԲ եւ Մ. ԵՕԹՆԵՂԲԱՅՐԵԱՆ խումբի ընդհ. ժողովը՝ այս ուրբաթ ժամը 8.30ին, ծանօթ հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ: Բացակաները նկատի կ'առնուին ։

ՄԱՐՍԷՅԼ.— Համախարբերդի Սէնթ Անթուանի մասնաճիւղը ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները, այս շաբաթ ժամը 20ին, Կիրակոսեանի բնակարանը, Սէնթ Անթուան ։

---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հ. Յ. Դ. Տէսինի կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Բարուհիի եւ Շ. Նարդունիի, Պ. ԿԱՐԱՊԵՏ ՓԱՓԱԶԵԱՆԻ մահուան առթիւ:

ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Տէսինի Ֆ. Կ. Խ. մասնաճիւղին, Café Morgui հովասուն վայրը, կիրակի, 9 սեպտեմբեր:

Մանրամասնութիւնները տեղին վրայ:

---

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Այրի Տիկին Շուշան Սիմոնեան (ծնեալ Ամիրեան, Սղերդցի): Կը փնտռէ քրոջը Թագուհիին տղան Յակոբ Աւետիսեանը: Յակոբ, որ կը գտնուէր Պէյրութ 15 տարիէ ի վեր իրմէն նամակ ստացած չէ ։ Տեղեկացնել Շ. Սիմոնեանի, 107 rue Etienne Dolet, Alfortville, (Seine), France:



Le Gérant : A. NERCESSIAN
Imp. DER AGOPIAN, 17, Rue Dameme, Paris (13e).

# Անգլիա չուզեր բանակցիլ
## ԻՐԱՆԻ ՆԵՐԿԱՅ ՎԱՐԻՉՆԵՐՈՒՆ ՀԵՏ

Բրիտանական կառավարութիւնը յայտարարեց թէ՝ իբրեւ հետեւանք Տոքթ. Մոսատեղի վերջնագիր - ճառին՝ քարիւղի վերաբերեալ բանակցութիւնները ոչ թէ ընդհատուած, այլեւ խզուած կը նկատէ։

Այս որոշումը տրուած էր նախարարական խորհրդակցութենէ մը վերջ, որուն կը մասնակցէին վարչապետը, արտաքին նախարարը, Պ. Սթոքս՝ որ վերջերս Թէհրան գացած էր եւն.։ Արտաքին նախարարութեան բանբերը յայտարարեց այս առթիւ.

— Իրանի վարչապետին վերջին ճառը վճռապէս կ'ապացուցանէ թէ ապարդիւն է որեւէ նոր բանակցութիւն ներկայ կառավարութեան հետ։ Գալով այն սպառնալիքին թէ ետ պիտի առնուին անգլիական ընկերութեան պաշտօնեաներուն բնակութեան արտօնագիրները, եթէ Իրանի կառավարութիւնը որեւէ փորձ կատարէ վտարելու զանոնք, անգամ մը եւս խախտած պիտի ըլլայ Լա Հէյի ատեանին վճիռը»։

Աւելորդ է ըսել թէ բրիտանական կառավարութեան այս որոշումը աւելի կը ծանրացնէ կացութիւնը։ Իրանի վարչապետը առջի օր նիստի հրաւիրած էր Մէճլիսը (երեսփ. ժողով), վստահութեան քուէ պահանջելու համար, ինչպէս ստացած էր ծերակոյտէն։ Հեռագիրը կ'ըսէ թէ 67 երեսփոխաններէն 48ը միայն ներկայ էին։ Երկու ժամ սպասելէ վերջ, նիստը կիրակի օրուան յետաձգուեցաւ, որպէսզի մեծամասնութիւն գոյանայ։ Շատ մը երեսփոխաններու բացակայութիւնը զարմանք պատճառեց, բաղդատելով ծերակոյտի գիրքին հետ։ Կ'ենթադրուի թէ անոնք չեն ուզեր ապայնական վարչապետին դէմ քուէարկել, բայց միւս կողմէ գոհ չեն բանակցութեանց խզումէն։

Մինչեւ կիրակի վարչապետը ամէն միջոց պիտի փորձէ, բացակայ երեսփոխանները ժողովի բերելու համար։ Եչ. առտու փակուեցան Թէհրանի խանութները եւ շուկանները, իբրեւ համակրանքի ցոյց վարչապետին համար։ Կանանչ հագած ոստիկաններ դիրք բռնած էին խորհրդարանին առջեւ, իսկ զինեալ զինուորներ՝ հրապարակին վրայ։ Միայն հազար հոգի հաւաքուած էին խորհրդարանին առջեւ, եւ բարեկարգութիւնը չխանգարուեցաւ։

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՎԵՐԱԶԻՆՄԱՆ ծախքերը մեր կարողութենէն վեր են, յայտարարեց Պ. Ռընէ Մայէր, Ֆրանսայի ազգ. տնտեսութեան նախարարը, Նիւ Եորք հասած ատեն։ Անդրադառնալով Հնդկաչինի պատերազմին, ըսաւ թէ 30.000 զինուորներ սպաննուած են եւ թէ 850 միլիոն տոլար պիտի ծախսուի ներկայ տարեշրջանին. գումար մը որ երկու անգամ աւելի է Մ. Նահանգներէն գալիք օգնութենէն։

ԴՊՐՈՑԱԿԱՆ ԹՆՃՈՒԿԸ աւելի ծանրացած կը թուէր երէկ, իբրեւ հետեւանք արմատականներու բռնած դիրքին։ Եթէ միջին ճամբայ մը չգտնուի, դահլիճի տագնապ ալ կրնայ ծագիլ։ Նախարարական խորհուրդը արտակարգ նիստ գումարեց առջի օր, ելք մը գտնելու համար։ Դպրոցական օրինագիծը, որ այժմ կը քննուի Ազգ. Ժողովին մէջ, քօղարկեալ նպաստներ կը տրամադրէ անհատական (կաթոլիկ) դպրոցներուն ալ։ Այս հարցին առթիւ դէմ դիմաց ելած են արմատական եւ ժողովրդական կուսակցութիւնները։ Երկուքն ալ կը մասնակցին դահլիճին, բայց արմատականները չեն ուզեր զոհել աշխարհականութեան սկզբունքը։

ՄԻՍԻՆ ԳԻՆԸ ԱԺԱՆՑՆԵԼՈՒ առաջին փորձը, կատարուեցաւ երէկ, ուրբաթ։ Մեծաքանակի գիները իջած էին 12—14 առ հարիւր, բայց մսավաճառները դժգոհ են։ Ոստիկանութեան վերատեսուչը լաւատես կ'երեւայ։ (Փարիզի մէջ կան 4500 մսավաճառի խանութներ)։ — Կաթնավաճառները կը պահանջեն 36 առ հարիւր աւելցնել կաթին գինը։— Նուազագոյն աշխատավարձքի գումարը պիտի ճշդուի այսօր, շաբաթ։ (Թերեւս ամսական 19.500 — 19.700 ֆրանք, սէնտիքաները կը պահանջեն 23.600)։ Ելեկտրականութեան, ածուխի եւ կազի գիներն ալ պիտի ճշդուին այսօր։

WORMS ԴՐԱՄԱՏԱՆ դէմ կատարուած յարձակումը տասը միլիոն ֆրանք վնաս պատճառած է։ Ահազին իրարանցում կը տիրէ Թաղին մէջ։ Բարեբախտաբար մարդկային կորուստ չկայ, հակառակ պայթումին ուժգնութեան։ Ինչպէս գրած էինք, այս դէպքէն 24 ժամ առաջ ալ ռումբեր նետուած էին ուրիշ դրամատան մը վրայ որ համայնավարական կը համարուի։ Ոստիկանութիւնը արտակարգ միջոցներ ձեռք առաւ, դաւադիրները գտնելու համար։ Մէկ ամսուան մէջ ութերորդ անգամ է որ ռումբեր կը նետուին անծանօթներու կողմէ։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Արշալոյս Մանուկեան (140 rue Haxo, Paris (19), կը յայտարարէ թէ իր ողբացեալ ամուսինին

### ԿՂԵՄԷՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան մասնաւոր պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, 9 Սեպտեմբեր, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, (15 rue Jean Goujon)։

Հանգուցեալին յիշատակը յարգող բոլոր ազգական, բարեկամ ու ծանօթները կը հրաւիրուին ներկայ ըլլալ այս հոգեհանգստեան պաշտօնին։

---

### ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Տէսինի Ֆ. Կ. Խ. մասնաճիւղին, Café Morgui հովասուն վայրը, կիրակի, 9 սեպտեմբեր։

Մանրամասնութիւնները տեղին վրայ։

---

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԴՊՐՈՑԻ

Պուլվար Օտտոյի (Մարսէյլ) Կ. Խաչի, Թաղականութեան եւ Նոր Սերունդի միացեալ վարժարանը կը վերաբացուի Հոկտ. 1ին։ Արձանագրութեան համար նախօրօք դիմել՝ Օր. Աստղիկ Հայրապետեանի։

Կը պաշտօնավարէ Պ. Ազգին Մարտիրոսեան։

---

### ԴԵՐՁԱԿԻ ԱՇԱԿԵՐՏ ՄԸ ԿՈՒԶՈՒԻ

14 — 15 տարեկան, մանչ կամ աղջիկ, գործատէրը պայմանագրութիւն պիտի կնքէ եւ յարատարրէ։

Դիմել Mr. Germain, 12 rue Jules Guesde, L'Haye les Roses (S):

---



---


**Le Gérant : A. NERCESSIAN**
Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13e).


### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԷՍԻՆ.— Ֆ. Կ. Խ. Տէսինի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ 8 սեպտ. շաբաթ կէսօրէ վերջ ժամը 5ին, ընկերուհի Տիկ. Աստուրեանի բնակարանը։ Կարեւոր օրակարգ։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Դաշնակցութեան Օրը Վալանսի մէջ Հոկտ. 13ին, Salle des Fêtesի մէջ։

ՄԱՐՍԷՅԼ.— Համախաբբերդի Սէնթ Անթուանի մասնաճիւղը ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները, այս շաբաթ ժամը 20ին, Կիրակոսեանի բնակարանը, Սէնթ Անթուան։

---

### ԳՈՄՕՆԻ ԱՂՕԹԱԺՈՂՈՎՆԵՐԸ

Գոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ, ամէն չորեքշաբթի կէս օրէ վերջ, ժամը 3.30ին աղօթքներ կը կատարուին եւ մասնաւոր քարոզ կը տրուի հիւանդներու համար։

Կը հրաւիրուին բոլոր հայ կիները մասնակցիլ այս ժողովներուն։

Union Spirituelle des Dames, Eglise Arménienne Allée des Puits, Beaumon, Marseille :

---

«Իզվեստիա», «պատերազմի պատրաստութեան դաշնագիր» կը կոչէ ստորագրուած վաւերագիրը: Իսկ Փարիզի «Իւմանիթէ»ն կ'ըսէ թէ դաշնագրին համաձայնութեամբ, Ամերիկացիները 120.000 — 200.000 զինուոր, հազար օդանաւ եւ 500? սուզանաւ պիտի պահեն Ճափոնի մէջ :

## Իրանեան թնճուկը

### ՎԱՐՉԱՊԵՏԸ ԿԸ ՍՊԱՌՆԱՅ, ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ ՄԻՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԴԻՄԵԼՈՎ.— ԵՐԵՍՓ. ԺՈՂՈՎԸ ՆՈՐԷՆ ՄԵԾԱՄԱՍՆՈՒԹԻՒՆ ՉՈՒՆԵՑԱՒ

Մինչ այս մինչ այն, Պարսիկները փորձեր կը կատարեն, նաւթահորերը բանեցնելու համար, գոնէ 50 առ հարիւր համեմատութեամբ :

Իրանի երեսփ. ժողովը նիստի հրաւիրուած էր կիրակի օր, վստահութեան քուէ տալու համար վարչապետին, բայց նորէն մեծամասնութիւն չգոյացաւ: Կը բացակայէին 26 երեսփոխաններ: Նիստը յետաձգուեցաւ հինգշաբթի օրուան: Անգլիոյ ուղղուած վերջնագիրը պիտի ղրկուի այսօր — վաղը, առանց սպասելու երեսփ. ժողովին վաւերացման :

Անցեալ հինգշաբթի օր վարչապետը մէկուկէս ժամ սպասեց, որպէսզի մեծամասնութիւն գոյանայ: Այս անգամ ներկայ էին միայն 70 երեսփոխաններ, ինչ որ կը նշանակէ հինգ ձայն պակաս օրինական մեծամասնութենէն: Ժողովը կարդաց 12 ընդդիմադիր երեսփոխաններու նամակները, որոնցմով կը յայտնէին թէ պիտի չմասնակցին, ցորչափ կառավարութիւնը եւ իր կուսակիցները սպառնալիքներ կ'ուղղեն :

Հեռագիրը կ'ըսէ թէ Իրանի վերջնագիրը պիտի ղրկուի կամ արդէն ղրկուած է նախագահ Թրումընի խորհրդականին՝ Պ. Հէրիմընի, Ուաշինկթընի իրանեան դեսպանին միջոցաւ, խնդրելով որ բրիտանական կառավարութեան յանձնէ :

Կիրակի օրուան նիստին մէջ, վարչապետը յուզումնալից ճառ մը խօսեցաւ, ազդարարելով.

— «Վաղուընէ սկսեալ կառավարութիւնը գործի պիտի ձեռնարկէ: Մենք պատրաստ ենք մեռնելու. մենք ոչ մէկ բանէ, ոչ մէկ մարդէ կը վախնանք: Ոչ ոք կրնայ ահաբեկել այս կառավարութիւնը՝ կեղծ ամբաստանութիւններով: Բրիտանական գործակալներ կան խորհրդարանին մէջ կառավարութեան, մինչեւ անգամ կայս. պալատին մէջ: Մենք անփոփոխ կը պահենք մեր վերջնագիրը : Վճռած եմ ոչինչ փոխել մեր քաղաքական ուղիղծէն» :

Այս առթիւ նորէն յարձակելով բրիտանական [illegible]թեան վրայ, ըսաւ թէ Անգլիա [illegible] որ Իրանը անկախ ըլլայ, վասնզի [illegible] մեծ ոխութիւնները կ'ուզեն շահագործել [illegible] կ'ապացուցանեն ԺԸ. եւ ԺԹ. [illegible] կնքուած դաշնագիրները: Կ'ազդարարեմ Անգլիացիներուն թէ Բրիտանիայէն աւելի մեծ [illegible] մը կայ որ դարանամուտ կը սպասէ» :

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ դաշնիւր, նոյնիսկ խորհրդարանը բացառիկ նիստի պիտի հրաւիրուէին, եթէ Իրան ջնջէ Ապատանի մէջ մնացած 350 Անգլիացիներուն բնակութեան արտօնագիրները: Այն ատեն Անգլիա կարգ մը միջոցներ ձեռք պիտի առնէ,— տնտեսական ճնշում, զինեալ միջամտութիւն, եթէ Անգլիացիները վտարուին: ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՏԽՐՈՒՆԻ.— Պոլսոյ վերջին թղթաբերէն կ'իմանանք թէ Սեպտ. 1ին յանկարծամահ եղած է Պ. Ցարութիւն Պիւքէր (Պիւքիւճեան), իրաւագէտ եւ անդամ Ազգ. Կեդր. վարչութեան : Վաթսունը նոր բոլորած էր :

ԵՐԵՔ ՄԵԾԵՐՈՒ ժողովը բացուեցաւ երէկ, երկուշաբթի, Ուաշինկթընի մէջ: Օրակարգի խնդիրները ծանօթ են արդէն:— Գլխաւորը գերմանականն է, որու մասին տարբեր տեսակէտներ ունի մանաւանդ Ֆրանսա: Միջին Արեւելքի խնդիրներն ալ կարեւոր տեղ մը կը բռնեն օրակարգին մէջ:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ պատերազմական փոխ – նախարարը, մարաջախտ Սոքոլովսկի, բուռն ճառ մը խօսեցաւ Սոֆիայի մէջ, Պուլկարիոյ «ազատագրութեան» տարեդարձին առթիւ: Արեւմտեան պետութեանց հետ, խստօրէն ձաղկեց նաեւ «Ցուգօ Թիթօն», նախատեսելով անոր մօտալուտ անկումը: Ըսաւ թէ «յարձակողական ուժեր կան Անգլիոյ, Մ. Նահանգներուն եւ Ֆրանսայի մէջ որոնք պատերազմ կ'ուզեն, հսկայական շահեր ապահովելու եւ ուրիշ երկիրներ կողոպտելու համար [illegible]» :

ՀԱՅ ԿՕՇԿԱԿԱՐ ՄԸ, Գէորգ Գալուճեան 46 տարեկան, կիրակի առտու մեռած գտնուեցաւ իր սենեակին մէջ (11 rue Bisson): Հեղձամահ եղած էր կազէն: Իր բարեկամներէն Աստուր Սէմէրճեան, 47 տարեկան, որ գիշերը իր սենեակը պառկած էր, հիւանդանոց փոխադրուեցաւ ծանր վիճակի մէջ:

ՓՈՒԼԱՑԻ զինադադարի բանակցութեանց համար նոր վայր մը առաջարկած էր զօր. Րիճուէյ. Կարմիրները մերժեցին: Կռիւները կը շարունակուին :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԴՊՐՈՑԻ

Պուլվար Օտտոյի (Մարսէյլ) Կ. Խաչի, Թղթակցութեան եւ Նոր Սերունդի միացեալ վարժարանը կը վերաբացուի Հոկտ. 1ին: Արձանագրութեան համար նախօրօք դիմել՝ Օր. Աստղիկ Հայրապետեանի:

Կը պաշտօնավարէ Պ. Ազգին Մարտիրոսեան :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ՊՕՄՈՆԻ Կ. Խ.Ի ԴՊՐՈՑԻ

Արձանագրութեան համար, կը խնդրուի ծնողներէն դիմել եկեղեցւոյ յարակից սրահը, ամէն հինգշաբթի 2—4, սկսելով Սեպտ. 13էն :

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տարաբախտ ԿԱՐԱՊԵՏ ՓԱՓԱԶԵԱՆի մահուան առթիւ, Տիկին Բարուհիին եւ Շ. Նարդունիին ցաւակցութիւն կը յայտնեն եւ փոխան ծաղկեպսակի՝ ՀԱՑ - ԲՈՅԺի ֆոնտին կը նուիրեն Տէր եւ Տիկին Ոսկերիչեան (Փարիզ) 2000 ֆրանք, Տէր եւ Տիկին Տէյիրմէնճեան (Փարիզ) 2000 Ֆր.:




Le Gérant : A. NERCESSIAN

Imp. DER AGOPIAN, 17, Rue Damesme, Paris (13e).


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի ընդհ. ժողովը՝ այս հինգշաբթի ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

Գ. ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. Արծիւ ենթակոմիտէի ժողովը այս շաբաթ ժամը 21ին, 17 rue Ampère, Cachan :

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Կոմիտէի ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 20.30ին, «Համօ Օհանջանեան» ակումբին մէջ: Շատ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի կ'առնուին:

ՆԱՄԱԿՆԵՐ ունին Ժիրայր Փալամուտեան, Ահարոն Տատուրեան :

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.— Տիկին Սիրանոյշ Առիլպերթ Մեքիկեան (ծնեալ Աղասեան), որ եղած է Կիպրոսի որբանոցը, անկէ անցած է Միտիլլի (Յունաստան) եւ այժմ Մարսէյլ ըլլալ կը կարծուի : Տեղեկացնել եղբօրը՝ Ստեփան Աղասեանի Rafael — Maria Corobano 2, Villa de Cuba Edo. Hragua, Venezuela (S. Am.) :

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Այրի Տիկին Եղսա Պաղտասարեան եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ կամ նամակով եւ ծաղկեպսակով մասնակցեցան Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆի յուղարկաւորութեան :

ՄՕՏԱԿԱՅ ԳԻՒՂԻ ՄԸ ՄԷՋ (Փարիզէն 50 քիլմ.)

Հաստատուած հայ ընտանիք մը կ'ուզէ հոկտեմբերէն սկսեալ, ստանձնել փոքր երախաներու խնամքը (երկու տարեկանէն վեր):

Փափաքողները դիմեն ՏԻԿ. ԱԻԱԳԵԱՆԻ, Château de Mortcerf (S. et M.) : Կարելի է հեռաձայնել Փարիզ, SEG. 27-93 :

ԾԱՆՕԹ.— Դպրոցական տղոց համար վարժարան յաճախելու մեծ դիւրութիւն:

